Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9 (111)

Отдел пропаганды и агитации ЦК КП(б) Армении

ՀԱՅՊԵՏԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ—1941

digitised by A.R.A.R.@

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9 (111)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

digitised by A.R.A.R.@

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ

1. ԳՐԱՖԻԿԸ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՕՐԵՆՔՆ Է . . . 3
2. ԼԱՎ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻՆ ՆՅՈՒԹԱՊԵՍ ԽՐԱԽՈՒՍԵԼՈՒ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ . . . . . . . . 14
3. ԻՐԱՔ (տեղեկանք) . . . . 55

---



# ԳՐԱՖԻԿԸ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՕՐԵՆՔՆ Է

*Համամիութենական 18-րդ պարտիական կոնֆերանսը, ընկ. Մալենկովի զեկուցման շուրջն ընդունած իր բանաձևում, տնտեսական և պարտիական կազմակերպություններից պահանջեց վերջ դնել անպլանայնությանը, արտադրանքի անհամաչափ թողարկմանը, գրոհայնությանը ձեռնարկությունների աշխատանքի մեջ և հասնել այն բանին, որ յուրաքանչյուր գործարան, ֆաբրիկա, հանքահոր, երկաթուղի, ամեն օր կատարի արտադրական ծրագիրը նախօրոք մշակված գրաֆիկայով։*

*«Պարտիական կազմակերպությունները պետք է հասկանան,—ասված է կոնֆերանսի բանաձևում,—որ պատրաստի արտադրանքի անհամաչափ թողարկումն ստեղ-*



1516-54
digitised by A.R.A.R.@

ծում է ձեռնարկության աշխատանքի սխալ ռեժիմ, հասցնում է սարքավորման պարապուրդների, բանվորական ուժի պարապուրդների, արտադրական կարողությունների թերօգտագործման, խոտանի ավելացման, արտաժամյա աշխատանքների համար կատարվող անարտադրողական վերվճարումների: Այդպիսի սխալ ռեժիմը ձեռնարկությունը պահում է տենդային վիճակում և ձախողման մշտական սպառնալիքի տակ է դնում պետական պլանի կատարումը նրանց կողմից»:

Արտադրության մեջ բարձր կուլտուրայի կարևորագույն ցուցանիշներից մեկը հանդիսանում է պլանի կատարման համաչափությունը, արտադրական պրոցեսի ռիթմայնությունը, կայուն օրական գրաֆիկով աշխատելը:

Օրական գրաֆիկը որոշում է, թե յուրաքանչյուր բրիգադան, հերթափոխությունը, առանձին ցեխը, ամբողջ գործարանը, ո՞ր արտադրանքից, ի՞նչ քանակով պետք է ամեն օր բաց թողնի: Այդ գրաֆիկը կարող է ապահովվել միայն ամբողջ ձեռնարկության ներդաշնակ աշխատանքով:

Օրական գրաֆիկի պայմաններում պլանավորել—դա նշանակում է նայել առաջ,



գործարանային մեխանիզմի բոլոր օղակների ջանքերն ի մի հավաքել, այսօր նախապատրաստել և լուծել վաղվա հարցերը, հոգ տանել միջանկյալ պաշարների մասին, առանց որոնց արտադրանքի ռիթմային թողարկումը ձախողման վտանգի տակ կկանգնի:

Գործի հաջողությունը կախված է նրա այնպիսի կազմակերպումից, որը պետք է ապահովի արտադրանքի թողարկումը անպայման պլանի համաձայն և բոլոր բնագավառներում:

Հենց այդ պատճառով էլ օրական գրաֆիկի պայմաններում դիսպետչերական աշխատանքը ձեռնարկություններում հսկայական նշանակություն է ձեռք բերում: Ժամանակին արձագանքել առաջ եկող թերություններին, հմտորեն կանխել դրանք, գիտենալ նյութերի, գործիքների, պաշարների հաշիվը, գիտենալ մարդկային ռեզերվները և արտադրության գործիքների ու միջոցների ճիշտ մանևրներ անել—ահա տնտեսվարի խնդիրը:

1941 թվի առաջին կվարտալի արդյունքները ցույց են տալիս, որ արդյունաբերության վերակառուցումը Համամիութենական 18-րդ պարտիական կոնֆերանսի որոշումների հիման վրա սկսում է բերել առաջին



digitised by A.R.A.R.@

հաջողությունները։ Մեծ թվով ձեռնարկություններ անցյալ տարվա համեմատությամբ լավացրել են իրենց աշխատանքները։ Շատ ձեռնարկություններ առաջին անգամ, երկար ժամանակ ետ մնալուց հետո, սկսել են կատարել պետական պլանը։ Այդպիսի հաջողություններն զգալի չափով բացատրվում են նրանով, որ այդ ձեռնարկություններում մտցված օրական գրաֆիկը դարձել է հսկայական կազմակերպիչ ուժ, որն աշխատանքի բոլոր ասպարեզները բարձրացրել, հասցրել է արդյունաբերության առջև ծառացած նոր խնդիրների մակարդակին։

Առանցքակալների պետական 1-ին գործարանի աշխատանքն այդ տեսակետից ցուցադրական է. նա ապրանքային արտադրանքի կվարտալային պլանը կատարել է 105 տոկոսով, իջեցնելով արտադրանքի ինքնարժեքը հունվարին 16,2 տոկոսով, փետրվարին՝ 10,3 տոկոսով։ Ընթացիկ տարվա միայն երկու ամիսներում գործարանի ֆինանսական կուտակումները կազմել են 30 միլիոն ռուբլի։ Գործարանը կարողացել է ապահովել արտադրության համաչափ ռիթմը, դարձնելով այդ իր աշխատանքի օրենքը։ Գործարանի համաչափ աշխատանքի հիմքը հանդիսացել է ամբողջ կոլեկտիվի



մոբիլիզացիան օրական գրաֆիկի շուրջը։ Գործարանն ավելի ու ավելի է վերջ տալիս գրոհայնությանը, անհամաչափությանը, որոնք դեռ մինչև վերջերս հանդիսանում էին այդ ձեռնարկության աշխատանքի «ոճը»։ Գործարանում մինչև օրական գրաֆիկին անցնելը տարվել է մեծ նախապատրաստական, կազմակերպչական աշխատանք, բարելավվել է գործարանի ներքին պլանավորումը, կատարման սիստեմատիկ ստուգումն արտադրության բոլոր օղակներում՝ սկսած բրիգադից, ցեխից՝ վերջացրած գործարանային վարչության բաժիններով. աշխատանքային և տեխնոլոգիական դիսցիպլինայի ամրապնդումն ապահովեց գործարանին ամրացնել իր հաջողությունները։

Պայքարը հանուն գրաֆիկի, հնարավորություն տվեց բանալ հիմնարկության գործունեության ստվերոտ կողմերը, որոնք աշխատանքի հին մեթոդների ժամանակ հաճախ մնում էին աննկատ։ Ահա օրինակ՝ Խարկովի դազգյահաշինական գործարանը գերակատարել է մարտ ամսվա ամսական առաջադրանքը։ Օրական գրաֆիկի համաձայն, բաց էր թողնվում դազգյահների 2 տիպ։ Ամեն ինչը լավ կլիներ, եթե չլիներ մի



digitised by A.R.A.R.@

տխուր «բայց»... Այդ գործարանի կողմից դազգյահների հանձնումը կատարվում էր ամիսը երկու անգամ. մարտի 25-ին հանձնվել է 25 դազգյահ, մարտի 31-ին՝ 49 դազգյահ: Դժվար չէ համոզվել, որ այդ գործարանում տեղ ունեն գրոհայնությունը, տատանումները, որոնց մասին պարտկոնֆերանսում խոսվեց:

Մոսկվայի «Կոմպրեսոր» գործարանի դիրեկտորը—մի ձեռնարկություն, որը պլանը չէր կատարում— յուրահատուկ ձևով է պայքար կազմակերպել գրոհայնության դեմ: Նա հրամայում է ցեխի պետերին՝ գործարանից չգնալ մինչև նրանց ցեխերը գրաֆիկ չմտնեն: Պետերն օրեր ու գիշերներ էին անցկացնում ցեխերում, սակայն «գրոհայնության դեմ պայքարելու մի նոր գրոհ»-ից բացի ոչինչ չէր ստացվում:

Եզրակացությունն այս ամենից պարզ է— բավական չէ գրաֆիկ մտցնել. անհրաժեշտ է նաև աշխատանքի ողջ կազմակերպումը նույնպես վերանայել ռիթմային աշխատանքի ապահովման տեսանկյունից:

Կարելի՞ է, ասենք, հուսալ գրաֆիկով հաջող աշխատանք, եթե հաշվառման սիստեմը ձեռնարկությունում ղեկավարին չի տա գործերի դրության օպե-



րատիվ, ճիշտ պատկերը, եթե ճիշտ չեն հաշված միջգործարքային և միջցեխային պաշարները: Ի հարկե, չի կարելի: Աշխատանքի ճիշտ կազմակերպումն ապահովվում է ոչ հրամանների հեղեղով, ոչ երդումներով և ոչ էլ ժամերի այն քանակով, որոնց ընթացքում արտադրության հրամանատարներն իրենց բանվորական օրվանից հետո նստում են ցեխերում—անհրաժեշտ է տիրապետել աշխատանքի լենինյան-ստալինյան ոճին:

Ձեռնարկության արտադրական հաջողությունների հիմքը հանդիսանում է բոլոր արտադրական աշխատամասերի ներդաշնակ աշխատանքը: Կենտրոնական վճռական դերն այդ աշխատանքում պատկանում է ստորին օղակի հրամանատարին՝ վարպետին: Այդ պատճառով էլ պարտկոնֆերանսն առաջարկեց բարձրացնել վարպետի դերը, որպես արտադրության անմիջական կազմակերպչի և գործը դնել այնպես, որպեսզի վարպետն իրեն հանձնված արտադրության աշխատամասում հանդիսանա լիիրավ ղեկավար:

Վարպետը պետք է ունենա հերթափոխային առաջադրանքը և ճշտորեն կատարի այն: Մաքրությունը և կարգը ձեռնարկությունում, դա այն պարտադիր մի-



digitised by A.R.A.R.@

նիմումն է, առանց որի խոսակցությունները կուլտուրական, կազմակերպված աշխատանքի մասին՝ պարզապես շաղակրատություն են։ Այդ պատճառով էլ պատահական չէ, որ պարտիական կոնֆերանսը պահանջեց՝ անմիջապես կարգ ու մաքրություն մտցնել ձեռնարկություններում։ Վարպետը պետք է լինի կարգի և մաքրության համար հենց առաջին պայքարողը, ոչ թե կամպանիայից կամպանիա պայքարել կեղտի դեմ, այլ հարատև կերպով մաքրություն և կարգ պահպանել, պահանջել, որպեսզի բանվորական տեղերը և սարքավորումը կանոնավոր պահպանվեն։ Վարպետը տնտեսավարորեն պետք է օգտագործի նրա աշխատամասին՝ աշխատանքի համար բաց թողնված նյութերը, գործիքները։

Պարտիական կոնֆերանսը պահանջեց նաև դիսցիպլինայի խստագույն պահպանումը տեխնոլոգիական պրոցեսում։ Լավ վարպետը գիտե տեխնոլոգիական պրոցեսը, կարող է այն բացատրել բանվորներին, ապահովում է նրա անշեղ իրագործումը։

Պլանները կատարող շատ ձեռնարկություններ՝ միևնույն ժամանակ ունեն արտադրական նորմաները չկատարող բանվորների մեծ տոկոս։ Վարպետը պետք է ճիշտ



դասավորի բանվորներին, հմտորեն կազմակերպի դազգյահների բեռնվածությունը, հասնելով այն բանին, որպեսզի նրա աշխատամասի բոլոր բանվորները կատարեն իրենց նորմաները։ Վարպետը ստախանովականների ղեկավարն ու կազմակերպիչն է, նա ամբողջ հոգով շահագրգռված է ստախանովական շարժման զարգացման գործով։ Բանվորների արտադրական ուսուցման՝ ընդհանուրի կողմից ընդունված ձևեր հանդիսանում են ստախանովական դպրոցները։ Վարպետը կազմակերպելով ուսուցումն այդպիսի դպրոցներում իր աշխատանքում անփոխարինելի օգնություն է ստանում։

Գործարանային մեխանիզմի ռիթմային աշխատանքը միայն այն ժամանակ կարող է հուսալի լինել, երբ ղեկավարների հեղինակությունը և հմուտ աշխատանքը լրացվում է ենթարկվողների կարգապահությամբ։ Հրամաններն աշխատանքի պրոցեսում պետք է կատարվեն առանց հապաղումների։ Սակայն վատ է այն ղեկավարը, որը հավատ ընծայելով իր հրամանների ուժին, խորշում է նրա կատարման ստուգումից։ Կատարման ստուգումը ներքևից վերև՝ սովորեցնում է դիսցիպլինայի, բարձրացնում է մարդկանց պատասխանատվու-



digitised by A.R.A.R.@

թյունը օպերատիվ առաջադրանքների կատարման գործում։ Ձեռնարկության աշխատանքի ռիթմայնությունը միշտ էլ կախում ունի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամից, նրա կարգապահությունից, գիտակցությունից, հմտությունից, ճշտությունից՝ աշխատանքի մեջ։ Յուրաքանչյուրի աշխատանքի ստուգումը, թերությունների բոլշևիկյան ինքնաքննադատությունը հզոր դաստիարակության միջոց է աշխատանքում։

Այս բոլորից բխում են ագիտատորների հսկայական խնդիրներն արտադրության մեջ։ Ագիտատորները պետք է ամեն օր օգնեն պարտիական և տնտեսական կազմակերպություններին՝ արտադրական պլանը բոլոր ցուցանիշներով կատարելու գործում, աշխատանքի գրաֆիկը ճշտորեն պահպանելու, աշխատանքային և տեխնոլոգիական դիսցիպլինան ամրապնդելու գործում։ Ագիտատորները պետք է օժանդակեն վարպետների հեղինակությունը բարձրացնելուն, օգնեն վարպետներին՝ արտադրության մեջ կարգապահություն, կարգ ու մաքրություն մտցնելու և պահպանելու գործում։ Նրանք պետք է հասարակական կարծիք ստեղծեն դատարկաշրջիկների, լոդրերի, խոտան արտադրողների և արտադրության այլ կազ-



մալուծիչների դեմ, պետք է մերկացնեն աշխատանքում անբարեխղճություն ցուցաբերելու յուրաքանչյուր արտահայտություն, որ տանում է դեպի արտադրական ռիթմի խախտումը։

Ստալինյան այն ցուցմունքը, թե ղեկավարել, դա նշանակում է նախատեսել, պահանջում է տնտեսական ղեկավարությունից և պարտիական կազմակերպություններից՝ ստեղծել արդյունաբերության և տրանսպորտի նորմալ, ռիթմային աշխատանքի բոլոր պայմանները։

Հենց դրան են ուղղված ՀամԿ(բ)Պ Համամիութենական 18-րդ կոնֆերանսի որոշումները։ Հատկապես հենց դրան պետք է ենթարկվեն պարտկազմակերպությունների մասսայական-քաղաքական և ագիտացիոն աշխատանքները։ Մեր խնդիրն է հասնել այն բանին, որ գրաֆիկը դառնա սոցիալիստական բոլոր ձեռնարկությունների աշխատանքի օրենքը։

---



digitised by A.R.A.R.@

## ԼԱՎ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻՆ ՆՅՈՒԹԱՊԵՍ ԽՐԱԽՈՒՍԵԼՈՒ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ

«...ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ԽՍՏՈՐԵՆ ԵՎ ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԿԻՐԱՌԵԼ ԼԱՎ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԽՐԱԽՈՒՍՄԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ, որն իրագործվում է վարձատրության գործարքային սիստեմի ձևով՝ բանվորների համար, պրեմիալ սիստեմի ձևով՝ ղեկավար աշխատողների համար և ոչ-որակյալ աշխատանքի համեմատությամբ որակյալ աշխատանքի ավելի բարձր վարձատրման ձևով»:

*(ՀամԿ(բ)Պ 18-րդ Համամիութենական կոնֆերանսի բանաձևից):*

*ՀամԿ(բ)Պ Համամիութենական 18-րդ կոնֆերանսը տրանսպորտի և արդյունաբերության թերությունները արմատախիլ անելու, գլխավոր կապիտալիստական երկրների ազգաբնակության մեկ հոգուն ընկնող արտադրանքի չափերը գերազանցելու խնդրին համապատասխան՝ սոցիալիստական արտադրության հետագա հզոր վերելքն ապահովելու համար միջոցառումների ընդարձակ ծրագիր նշեց:*



*Հատուկ ուժով ընդգծվեց աշխատավարձի այնպիսի կազմակերպման անհրաժեշտությունը, որն ապահովի լավ աշխատողներին նյութապես խրախուսելու սոցիալիստական սկզբունքի խստագույն և հետևողական կիրառումը: Պարտիական կոնֆերանսի այս ցուցմունքը բխում է Ստալինյան Կոնստիտուցիայում արձանագրված սոցիալիզմի կարևոր սկզբունքից: «ՍՍՌՄ-ում իրականացվում է սոցիալիզմի՝ «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի» սկզբունքը»[1]:*

*Ինչո՞ւ սոցիալիստական հասարակության մեջ բաշխումը կատարվում է ըստ աշխա-*

---

[1] *ՍՍՌՄ Կոնստիտուցիա, հոդված 12, էջ 7. Հայպետհրատ, 1936 թ., Երևան:*



digitised by A.R.A.R.@

տանքի: Դա կապված է սոցիալիզմի— կոմունիզմի առաջին փուլի—կարևոր յուրահատկությունների հետ:

Առաջին. *Սոցիալիզմի ժամանակ արտադրական ուժերն այնքան չեն զարգացած, որպեսզի հասարակությունն իր տրամադրության տակ ունենա այնչափ մթերքներ, որ կարողանա ապահովել բաշխումն ըստ պահանջների: Դեռ Էնգելսն է մատնանշել, որ՝ «բաշխման մեթոդն էապես կախված է բաշխվող մթերքների քանակից և որ այդ քանակը, անշուշտ, փոխվում է արտադրության և հասարակական կազմակերպության պրոգրեսի հետ մեկտեղ»*[1]):

*Այդ նշանակում է, որ մինչև այն ժամանակ, քանի արտադրողական ուժերի ձեռք բերված մակարդակը* չի ապահովում նյութական բարիքների բաշխումը ըստ պահանջի, բաշխումը պետք է տեղի ունենա յուրաքանչյուրի աշխատանքի քանակի և որակի համաձայն:

[1]) *Կարլ Մարքս և Ֆրիդրիխ Էնգելս, Երկեր, հատոր* 28, *էջ* 232, (*ռուսերեն*):



Երկրորդ. *«Յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի» սոցիալիզմի սկզբունքի կիրառման անհրաժեշտությունը կապված է նաև աշխատավորության գիտակցականության մակարդակի, աշխատանքի նկատմամբ ունեցած նրանց վերաբերմունքի հետ: Կոմունիզմի բարձրագույն փուլի պայմաններում աշխատանքը կդառնա առաջին* կենսական պահանջ, *կվերածվի առանց հատուկ հարկադրանքի աշխատելու սովորության, «ձրի աշխատանքն ընդհանուրի օգտին կդառնա ընդհանուր երևույթ»*[1]): *Սոցիալիստական հասարակության մեջ մենք դեռ չենք հասել այդպիսի դրության: «Աշխատանքը ՍՍՌՄ-ում,— ասում է Ստալինյան Կոնստիտուցիան,— յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականությունն է և պատվի գործը, «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքով»: (Հոդված* 12):

*Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ-ում կապիտալիզմի մնացորդներն էկոնոմիկայում և մարդկանց գիտակցության մեջ դեռևս գո-*

[1]) Լենին, *Երկեր, հատոր* XXIV, *էջ* 651:



digitised by A.R.A.R.@

յություն ունեն, դեռ կան աշխատանքային դիֆերենցիալի խախտման ոչ քիչ փաստեր, կան որոշ թվով լոդըրներ և դավողներ։ Կոմունիզմի առաջին փուլի ժամանակ անհրաժեշտ է պետության հսկողությունն աշխատանքի չափի և սպառման չափի վրա։

Նշանակում է, բաշխման սոցիալիստական սկզբունքն ըստ աշխատանքի անհրաժեշտ է, որպես արդյունքների բաշխման և աշխատանքի բաշխման կարգավորիչ, հասարակության անդամների միջև։

Միայն «կոմունիստական հասարակության բարձրագույն փուլի ժամանակ,— գրում է Մարքսը,— երբ աշխատանքը կդադարի որպես միայն կյանքի միջոց լինելուց, այլ ինքը կդառնա առաջին կենսական պահանջ, երբ անհատների բազմակողմանի զարգացման հետ մեկտեղ կաճեն նաև արտադրողական ուժերը և կոլեկտիվ հարստության բոլոր աղբյուրները կհորդեն հեղեղի պես,— միայն այն ժամանակ... հասարակությունը կարող է գրել իր դրոշի վրա «յուրաքանչյուրն ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջի»[1]։

1) Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատոր 15, էջ 275 (ռուսերեն)։



Իսկ սոցիալիզմի օրոք հասարակությունն անհատական սպառումը և յուրաքանչյուրի բարեկեցությունն ուղղակի կախման մեջ է դնում ամեն մեկի աշխատանքի այն քանակից և որակից, որը տալիս է նա ողջ հասարակության համար ամբողջությամբ վերցրած։ «Անձնական շահագրգռվածությունը,— ասում է Լենինը,— բարձրացնում է արտադրությունը։ Մեզ հարկավոր է մեծացնել արտադրությունը նախ և առաջ և ինչ գնով ուզում է լինի»[1]։ Սովետական միլիոնավոր մարդկանց մեջ ամրապնդվում է նոր, կոմունիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը։ «Մարդիկ,— ասել է ընկեր Ստալինը ստախանովականների խորհրդակցությանը,— մեզ մոտ ո՛չ թե շահագործողների համար, ո՛չ թե պորտաբույծներին հարստացնելու համար են աշխատում, այլ իրենց համար, իրենց դասակարգի համար, իրենց՝ սովետական հասարակության համար, որտեղ իշխանության գլուխ են կանգնած բանվոր դասակարգի լավագույն մարդիկ։ Այդ պատ-

1) Լենին, Երկեր, հատոր 27, էջ 40, Պետհրատ, 1932 թ., Երևան։



digitised by A.R.A.R.@

ճառում էլ աշխատանքը մեզ մոտ հասարակական նշանակություն ունի, նա պատվի ու փառքի գործ է»: Մարդիկ մեզ մոտ աշխատում են իրենց սոցիալիստական հասարակության համար, որի ամրապնդումը և բարգավաճումը հանդիսանում են ժողովրդական բարեկեցության վերելքի հիմնական պայմանը: Այդ ծնում է նոր, կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը: Աշխատանքի նկատմամբ այդպիսի վերաբերմունքի վառ ցուցանիշը հանդիսանում է ստախանովական շարժման աճը: Աշխատանքը միլիոնավոր աշխատավորների համար դարձել է պատվի գործ, նրանք անձնվիրաբար և էնտուզիազմով բարձրացնում են իրենց հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորությունը, բազմապատկում են ժողովրդական հարստությունը:

Դրա հետ մեկտեղ մեր երկրում աշխատանքի խթան է հանդիսանում նաև այն, որ բաշխման սոցիալիստական սկզբունքը, վարձատրման սիստեմը, յուրաքանչյուր աշխատողի մեջ նյութական շահագրգռվածություն է առաջացնում աշխատանքի լավ արդյունքների հասնելու համար:

Սոցիալիստական մրցակցության և ստա-



խանովական շարժման զարգացումը անքակտելի կերպով կապված է նաև աշխատանքի վարձատրման ճիշտ կազմակերպման հետ:

Լենինը 1921 թվին, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 4-րդ տարեդարձի շուրջը հոդվածում գրել է. «Ոչ թե անմիջապես էնտուզիազմի վրա հենվելով, այլ մեծ ռևոլյուցիայի ստեղծած էնտուզիազմի օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության տնտեսական հաշվարկի վրա, նեղություն կրեք կառուցել նախ հաստատ կամրջակներ, որոնք տանում են... դեպի սոցիալիզմ. այլ կերպ դուք չեք մոտենա կոմունիզմին...»[1]:

Երրորդ. Բաշխումն ըստ աշխատանքի քանակի և որակի— սոցիալիստական սկզբունքի կիրառման անհրաժեշտությունը, կապված է սոցիալիստական հասարակարգի մի այլ շատ կարևոր յուրահատկության հետ:

Կոմունիզմի առաջին փուլի ժամանակ ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև

---

[1]) Լենին, Երկեր, հատոր 27, էջ 39, Պետհրատ, 1932 թ., Երևան:



digitised by A.R.A.R.@

դեռ գոյություն ունեն տարբերություններ, տարբեր աշխատանքներ մեքենայացված են ոչ հավասար չափով, գոյություն ունեն զգալի տարբերություններ աշխատողների որակավորվածության մեջ, կան քիչ և շատ որակավորված աշխատողներ, ավելի կամ պակաս հմտություն ունեցողներ, տարբեր լարվածությամբ և արտադրողականության տարբեր աստիճանով աշխատողներ:

Կոմունիզմի բարձրագույն փուլի ժամանակ արտադրական ուժերի վիթխարի աճի, տեխնիկայի պրոգրեսի հիման վրա, աշխատանքի բոլոր պրոցեսները հիմնականում մեքենայացված կլինեն և ենթարկված ավտոմատիզացիայի, բանվոր դասակարգի տեխնիկա-կուլտուրական մակարդակն այնքան բարձր կլինի, որ կանհետանա հակադրությունը մտավոր աշխատանքի և ֆիզիկական աշխատանքի միջև, հիմնականում կոչնչանան աշխատանքի որակային տարբերությունները:

Այնքան, որքան կոմունիզմի առաջին փուլի ժամանակ գոյություն ունեն աշխատանքի որակային տարբերությունները, հասարակությունը չի կարող ծախսված աշխատանքի միայն քանակի հաշվառմամբ



սահմանափակվել, նա պետք է հաշվի առնի աշխատանքի տարբեր որակները, աշխատանքի տարբեր որակավորումը:

Լենինը սովորեցնում է. «Մինչև այն ժամանակ, երբ կգա կոմունիզմի «բարձրագույն» փուլը, սոցիալիստներն ամենախիստ վերահսկողություն են պահանջում հասարակության ու պետության կողմից աշխատանքի չափի ու սպառման չափի վրա...»[1]): Լենինի այդ ցուցմունքը ոչ այլ ինչ է, եթե ոչ պահանջ՝ խստորեն և հետևողականությամբ կիրառել բաշխման սկզբունքը՝ ըստ աշխատանքի քանակի և որակի:

Դրա համար անհրաժեշտ է համաչափել տարբեր որակի աշխատանքը և աշխատանքի արդյունքները (այսինքն՝ աշխատանքի քանակը և որակն արտահայտված այդ աշխատանքի պրոդուկտով): Այլ կերպ ասած՝ անհրաժեշտ է համաչափել յուրաքանչյուրի աշխատանքի չափը, նրա սպառման չափի հետ, այսինքն՝ աշխատողի ծախսած աշխատանքը պետք է համաչափել պրոդուկտ-

1) Լենին, «Պետություն և ռեվոլյուցիա» 5-րդ գլուխ, էջ 84, Պետհրատ, 1934 թ., Երևան:



digitised by A.R.A.R.@

ներով արտահայտված աշխատանքի հետ, որը ստացել է աշխատողն իր աշխատանքի փոխարեն:

ՍՍՌՄ-ում այդ կիրառվում է դրամական ձևով: Նրա մեջ աշխատավարձի ձևով չափվում է աշխատողների կողմից ծախսված աշխատանքը: Նրանով չափվում են նաև աշխատանքի արդյունքները (ստեղծած պրոդուկտները):

Սակայն աշխատավարձը ՍՍՌՄ-ում ոչ միայն տարբեր աշխատողների աշխատանքի հաշվառման գործիք է հանդիսանում, այլև միաժամանակ, աշխատավորների որակի, աշխատանքի արտադրողականության, արտադրության բարձրացման հզոր լծակ:

Որքան բարձր է աշխատողի աշխատավարձը, այնքան ավելի պրոդուկտներ և սպառման առարկաներ կարող է նա գնել, այնքան բարձր է նրա անձնական բարեկեցությունը: Աշխատավարձի բարձրությունն իր հերթին որոշվում է յուրաքանչյուրի աշխատանքի քանակով և որակով, հասարակության համար նրա կատարած աշխատանքով:

Ուրեմն աշխատավարձի միջոցով կապ է սահմանվում աշխատողի հասարակական



արտադրության վերելքի համար կատարած աշխատանքի և նրա անձնական բարեկեցության միջև:

Պարտիան— ըստ աշխատանքի վարձատրելու սոցիալիստական սկզբունքը պաշտպանել է ժողովրդի թշնամիների դեմ մղած իր պայքարում, որոնք ամեն կերպ ջանում էին վիժեցնել սոցիալիզմի այդ կարևոր սկզբունքը: Պարտիան ջախջախեց դասակարգային թշնամիներին, ժողովրդի թշնամիներ՝ Տրոցկուն, Տոմսկուն և ուրիշներին, որոնք փորձում էին արմատավորել հավասարեցումը:

Իզուր չէր, որ Լենինը մերկացնելով ժողովրդի թշնամի և դավաճան Տրոցկու հավասարեցումն արմատավորելու փորձերը, ասում էր ,որ իսկական մարքսիստական լոզունգը, դա՝ հարվածայնությունն է աշխատանքում, հարվածայնությունն է և՝ սպառման մեջ:

Ընկեր Ստալինն իր պատմական վեց ցուցումների մեջ վեր հանեց այն ամբողջ վնասը, որ հասցնում էր հավասարեցումը ժողովրդական տնտեսությանը. «Մի շարք ձեռնարկություններում տարիֆային դրույքները մեզանում այնպես են սահմանված, որ գրեթե անհետանում է տարբերու-



digitised by A.R.A.R.@

թյունը որակյալ աշխատանքի և անորակ աշխատանքի, ծանր աշխատանքի և թեթև աշխատանքի միջև: Հավասարեցումը տանում է դեպի այն, որ անորակ բանվորը շահագրգռված չէ որակյալների շարքն անցնելու և այսպիսով զուրկ է առաջ շարժվելու հեռանկարից...»1):

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ամբողջ ժամանակաշրջանի ընթացքում անձնական, նյութական շահագրգռվածությունը, դեպի աշխատանքն աճող կոմունիստական վերաբերմունքի հետ միասին եղել է և այժմ էլ հանդիսանում է արտադրության վերելքի գլխավոր լծակներից մեկը:

Պարտիան և կառավարությունն օգտագործում են անձնական նյութական շահագրգռվածության խթանները ժողովրդական տնտեսության հետ մնացող ճյուղերի վերելքի համար, ամրապնդելով պետական, տնտեսական պլաններն այնպիսի միջոցառումներով, որոնք առաջացնում են աշխատողների անձնական շահագրգռվածություն այդ պլանների կատարման

1) Ստալին, Լենինիզմի հարցերը, էջ 410, 11-րդ հրատարակ. Երևան, Պետհրատ, 1940 թ.:



համար: Պարտիայի և կառավարության որոշումն աշխատանքի վարձատրման մասին Դոնբասի ածխային արդյունաբերության մեջ, որը ստորերկրյա աշխատանքի համար բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների բարձր վարձատրություն է սահմանում, հանդիսացավ ածխային արդյունաբերության վերելքի կարևորագույն հիմքերից մեկը: Բամբակի բերքատվության բարձրացման համար կոլխոզնիկներին հավելյալ վճար մտցնելը սովետական բամբակագործության հզոր վերելքի հասցրեց: Մոտերս ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Ժողկոմսովետի ընդունած որոշումները՝ բերքատվության և անասնապահության արդյունքայնության բարձրացման համար Ուկրաինայի և ՍՍՌՄ այլ ռեսպուբլիկաների, մարզերի, երկրամասերի կոլխոզնիկներին լրացուցիչ վարձատրություն սահմանելու մասին, հանդիսանում են գյուղատնտեսության արտադրության հետագա հզոր վերելքի հիմքը: Նույն բանին են ուղղված նաև պարտիայի և կառավարության մի շարք այլ որոշումները, ինչպես օրինակ, կոկ-սագիզի բերքատվության բարձրացման և ցանքերի ընդարձակման միջոցառումների



digitised by A.R.A.R.@

մասին, վուշի և կանեփի պարտադիր հանձնումների մասին:

Այսպիսով ըստ աշխատանքի քանակի և որակի վարձատրման սկզբունքի խստագույն և հետևողական կիրառումը կենսական անհրաժեշտություն է սոցիալիստական հասարակության համար:

***

Աշխատավարձը ՍՍՌՄ-ում արմատապես տարբերվում է այն աշխատավարձից, որը գոյություն ունի տնտեսության կապիտալիստական սիստեմի պայմաններում: Արտադրության միջոցները մեր երկրում կապիտալիստների սեփականությունից դարձել են ՍՍՌՄ բանվոր դասակարգի և ողջ սովետական ժողովրդի սոցիալիստական սեփականությունը: Սոցիալիստական ձեռնարկությունների ստեղծած ամբողջ պրոդուկցիան գտնվում է բանվոր դասակարգի և կոլխոզային գյուղացիության ձեռքում: Սրանից հետևում է, որ բանվոր դասակարգը ՍՍՌՄ-ում չի հանդիսանում իր բանվորական ուժի վաճառողը, որ նրա բանվորական ուժն ապրանք չի հանդիսանում և աշխատավարձը չի հանդիսանում ապրանքի— բանվորական ուժի գինը:

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է,



որ աշխատավորությունը սոցիալիստական հասարակության մեջ չի կարող ստանալ իր աշխատանքով ստեղծած ամբողջ պրոդուկտը (որը և համաժողովրդական կամ կոլխոզակոոպերատիվային սեփականություն է հանդիսանում):

Սոցիալիստական հասարակության մեջ ստեղծված ողջ արտադրանքից, ինչպես այդ դեռ ցույց է տվել Մարքսը, ողջ հասարակության շահերից ելնելով, անհրաժեշտ է դուրս գալ՝ 1. այն մասը, որը կգնա օգտագործված արտադրության միջոցների փոխարինման համար. 2. այն մասը, որը կգնա սոցիալիստական արտադրության ընդլայնման համար, կուտակումների համար. 3. այն մասը, որը կգնա ապահովագրական ֆոնդեր ստեղծելու համար (պատերազմի, անբերրիության, տարերային պատահարների և այլ դեպքերի համար):

Սպառման համար հատկացված մնացած մասից դեռ պետք է առանձնացվեն միջոցներ՝ ա) որոնք անհրաժեշտ են կառավարման ծախսերը ծածկելու համար. բ) որոնք հատկացված են քաղաքացիների հասարակական պահանջների բավարարման համար— դպրոցների և լուսավորության



digitised by A.R.A.R.@

այլ հիմնարկների, առողջապահության, մայրության և մանկության պաշտպանության ձեռնարկումների համար և այլն: Ինչպես հայտնի է, սոցիալիստական պետությունն այդ նպատակների համար հսկայական միջոցներ է ծախսում (1940 թվին— 41,7 միլիարդ ռուբլի)· դ) որոնք հատկացվում են անաշխատունակների ֆոնդին— թոշակներ, դրամական օգնություններ և այլն:

Հասարակական պրոդուկտի մնացած ամբողջ մասը բաշխվում է աշխատավորների միջև, ըստ աշխատանքի քանակի և որակի, համաձայն «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքի:

Աշխատավարձը ՍՍՌՄ-ում հանդիսանում է բանվորների և ծառայողների դրամական եկամուտը: Նա արտահայտում է ժողովրդական եկամտի այն մասը, որը գնում է բանվորների և ծառայողների անմիջական սպառման համար և բաշխվում է յուրաքանչյուրի աշխատանքի քանակին և որակին համապատասխան:

Միանգամայն պարզ է, որ ժողովրդական եկամտի մնացած բոլոր մասերը (թոշակները և դրամական օգնությունները, լուսավորության և առողջապահության



ծախսերը և, վերջապես, ժողովրդական եկամտի կուտակվող մասը) հանդիսանալով ժողովրդի սեփականությունը, աշխատավորների սեփականությունը, վերջին հաշվով նույնպես օգտագործվում են նրանց՝ սոցիալիստական հասարակության անդամների բարեկեցության համար:

Տնտեսության կապիտալիստական սիստեմում աշխատավարձն արտահայտում է բանվոր դասակարգի շահագործումը կապիտալիստների կողմից:

Գնելով բանվորական ուժը, կապիտալիստն ստիպում է բանվորին աշխատել 10—12 ժամ: Բանվորն իր 5—6 և դեռ էլ ավելի քիչ ժամվա աշխատանքով (անհրաժեշտ աշխատանք) արդեն ստեղծում է այն արժեքը, որ հավասար է բանվորական ուժի արժեքին: Աշխատանքի մնացած ժամերի ընթացքում (հավելյալ աշխատանք) բանվորն ստեղծում է հավելյալ արժեք— կապիտալիստների եկամուտը: Ակադեմիկ Վարգայի հաշիվներով ԱՄՆ-ում մինչճգնաժամային տարիներին (1929 թ.) աշխատավարձի յուրաքանչյուր 100 դոլլարից կապիտալիստները յուրացնում էին 150 դոլլար հավելյալ արժեք: Այլ կերպ ասած՝ անհրաժեշտ աշխատանքը կազմում



digitised by A.R.A.R.@

էր բանվորի կողմից թափած ողջ աշխատանքի 40%-ը, իսկ հավելյալ աշխատանքը՝ 60%-ը: Բանվորի հավելյալ աշխատանքը կապիտալիզմի պայմաններում հակադրվում է բանվորին, որպես կապիտալիստների շահույթ, որպես բանվորի շահագործման ուժեղացման գործիք:

Մարքսը ցույց է տվել, որ «հավելյալ արժեքն ընդհանրապես որպես սպառման պահանջների տվյալ քանակից վեր աշխատանք, միշտ էլ գոյություն կունենա, սակայն կապիտալիստական, ինչպես և ստրկատիրական սիստեմի պայմաններում և այլն, նա ունի անտագոնիստական ձև և լրացվում է հասարակության հայտնի մասի լիակատար անգործությամբ»[1]:

Հավելյալ աշխատանքը ՍՍՌՄ-ում այն պայմաններում, երբ աշխատանքը հանդիսանում է յուրաքանչյուր աշխատանքի ընդունակ քաղաքացու պարտականությունը, ապահովում է սոցիալիստական ընդլայնված վերարտադրության կարիքները, սոցիալիստական կուտակումների աճը, հայրենիքի

---

1) Կարլ Մարքս, «Կապիտալ» 3-րդ հատոր, էջ 721:



տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդումը և վերջին հաշվով ժողովրդական բարեկեցության հետագա վերելքը:

ՍՍՌՄ-ում բանվորը պարզ գիտակցում է, որ նա աշխատում է ոչ միայն իր համար, իր ընտանիքի համար, այլև իր սոցիալիստական պետության համար, հասարակության համար, որովհետև այդ պետության ամրապնդումը, մեր հասարակության հետագա զարգացումը և բարգավաճումը՝ աշխատավորների անձնական բարեկեցության վերելքի արմատական պայմանն է:

Այսպես է զուգակցվում ՍՍՌՄ-ում աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածությունը, ամբողջ հասարակական արտադրության զարգացման շահերի հետ:

Տնտեսության կապիտալիստական սիստեմի պայմաններում կապիտալի կուտակման աճին ուղեկցում է աշխատավորների անխուսափելիորեն աճող աղքատությունը:

ՍՍՌՄ-ում կուտակումների և սպառումների միջև հակասություն չկա: Որքան շատ են մեծանում կուտակումների ֆոնդերը, այնքան շատանում են անձնական



digitised by A.R.A.R.@

սպառման ֆոնդի մեծացման հնարավորությունները: Ահա թե ինչու ՍՍՌՄ աշխատավորները խորապես շահագրգռված են աշխատանքի արտադրողականության վերելքով, արտադրանքի ինքնարժեքի իջեցումով, սոցիալիստական կուտակումների է՛լ ավելի մեծ աճով:

Լենինը և Ստալինը բազմիցս ընդգծել են աշխատանքի արտադրողականության բարձրացման հսկայական նշանակությունը սոցիալիստական շինարարության կարևորագույն խնդիրների լուծման գործում: Արտադրողականության աճը հանդիսանում է կուտակումների աճի կարևորագույն պայմաններից մեկը, որքան բարձր է աշխատանքի արտադրողականության աճը, որքան շատ է իջնում ինքնարժեքը, այնքան մեծ են կուտակումների ֆոնդի մեծացման հետ մեկտեղ, անձնական սպառման ֆոնդը մեծացնելու հնարավորությունները: Հայտնի է, որ բանվորների և ծառայողների աշխատավարձի ֆոնդը երկրորդ հնգամյակի ընթացքում աճել է 32,7 միլիարդ ռուբլուց մինչև 82,2 միլիարդ ռուբլու: Երրորդ հնգամյակի երեք տարիների ընթացքում աշխատավարձի ֆոնդն աճել է 41,5 միլիարդ ռուբլով և



1940 թվին հասել է 123,7 միլիարդ ռուբլի: Այս ամենը ՍՍՌՄ աշխատավորների համար խորը շահագրգռվածության հիմք են ստեղծում— աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական կուտակումների աճման գործում:

Սակայն, դա նշանակում է նույնպես, որ աշխատավարձի և աշխատանքի նորմավորման կազմակերպումը պետք է ապահովի աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության աճի ճիշտ հարաբերություններ:

Դեռ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1924 թվի օգոստոսյան պլենումի «Աշխատավարձի քաղաքականության մասին» որոշման մեջ մատնանշվում էր. «Աշխատանքի արտադրողականության աճը պետք է անցնի աշխատավարձի աճից: Միայն այդ դեպքում կստեղծվի նյութական բազա և կկուտակվեն միջոցներ, և աշխատավարձի աճի ապահովման համար, և արտադրության ընդլայնման համար»[1]):

Աշխատավարձի ցուցանիշը, որպես անբաժանելի մաս, մտնում է ձեռնարկության

[1]) «ՀամԿ(բ)Պ-ն բանաձևերում», 1-ին մաս, էջ 627 (ռուսերեն):



digitised by A.R.A.R.@

արտադրանքի մեջ և նրա հետ մեկտեղ ժողովրդատնտեսական պլանի մեջ:

Սոցիալիստական տնտեսության հետագա զարգացումն ապահովվում է վիթխարի կապիտալ շինարարությամբ: Հայտնի է, որ 1940 թվին կապիտալ ներդրումները ժողովրդական տնտեսության մեջ կազմել են 38 միլիարդ ռուբլի, իսկ 1941 թվին կհասնեն 57 միլիարդ ռուբլու (1936 թվականի նախահաշվային գներով):

Մեր կապիտալ շինարարությունն ապահովող կարևորագույն աղբյուրներից մեկը հանդիսանում են սոցիալիստական ձեռնարկությունների կուտակումները: 1940 թվի ողջ ժողովրդատնտեսության մեջ կուտակումները կազմում էին մոտ 32 միլիարդ ռուբլի, իսկ 1941 թվին պետք է կազմեն 44,8 միլիարդ ռուբլի, որից 31,3 միլիարդ ռուբլին (46,4% ավելի, քան 1940 թ.) կմտնեն պետական բյուջեն: Արդյունաբերության շահույթների նախատեսված աճի հիմքը հանդիսանում է ինքնարժեքի նախատեսված իջեցումը: 1941 թվի ինքնարժեքի իջեցման 1 տոկոսը կապահովի (կլոր թվերով) երկու միլիարդ ռուբլի կուտակում:

Ինքնարժեքի իջեցումն իր հերթին զգալի չափով կախում ունի աշխատավարձի աճի



և արտադրողականության աճի ճիշտ հարաբերությունից: Հրապարակված տվյալներով (1938 թվին) աշխատավարձը հատկացումների հետ կազմել է արտադրանքի ինքնարժեքի 24,1%-ը: Դա միջին թիվ է ողջ արդյունաբերության համար միասին վերցրած: Քարածխային արդյունաբերության մեջ աշխատավարձը կազմել է ինքնարժեքի 62,9%-ը, պղնձարդյունաբերության մեջ՝ 57,1 %-ը, սև մետալուրգիայի՝ 27,3 %-ը, հիմնական քիմիայի՝ 28,2 %-ը, մեքենաշինության մեջ 30,2%-ը:

Երրորդ հնգամյակի պլանի համաձայն, աշխատանքի արտադրողականության աճի գծով պլանների գերակատարումը՝ աշխատավարձի աճի համեմատությամբ՝ կիջեցնի ինքնարժեքը 2,9%-ով (10% ընդհանուր իջեցումից): Երրորդ հնգամյա պլանով նախատեսված աշխատանքի արտադրողականության 65% աճը կապահովի 1942 թվի համապատասխան քանակի արտադրանքը՝ ծախսերի 20 միլիարդ ռուբլու հարաբերական կրճատման դեպքում 1937 թ. համեմատությամբ: Դրանից 15 միլիարդ ռուբլին պլանով կգնա աշխատավարձի մակարդակի բարձրացման ուղղությամբ, իսկ 5



digitised by A.R.A.R.@

միլիարդ ռուբլին՝ ինքնարժեքի իջեցման, կուտակումների համար։

Պարզ է, որ աշխատավարձի աճը պլանով նախատեսված լիմիտներից դուրս կրճատում է կուտակումները, նվազեցնում է միջոցների աղբյուրները, որոնք գնում են կապիտալ շինարարության համար, այսինքն՝ վնաս է հասցնում սոցիալիստական շինարարության արմատական շահերին։ Այդպիսին է աշխատավարձի աճի և աշխատանքի արտադրողականության աճի հարաբերության հարցի նշանակությունը։

Ուրեմն, սոցիալիզմի սկզբունքի—վարձատրությունն ըստ աշխատանքի քանակի և որակի հետևողական իրագործումը սոցիալիստական հասարակության զարգացման համար մեծագույն շարժիչ է, որը զուգակցում է աշխատավորների հասարակական և անձնական շահերը։ Այդ սկզբունքը հնարավորություններ է ստեղծում անձնական նյութական շահագրգռվածությունն օգտագործելու հասարակական արտադրության զարգացման և ժողովրդական, սոցիալիստական հարստության աճի օգտին։

Ուրեմն, այդ սկզբունքի խիստ և հետևողական կիրառումը ժողովրդական տնտե-



սության բոլոր ճյուղերում— բանվորների, արտադրության հրամանատարների և ծառայողների աշխատավարձի ճիշտ կառուցումը— հանդիսանում է սոցիալիստական պլանավորման կարևորագույն խնդիրը։

***

Աշխատավարձի կազմակերպումը և ձևերը ՍՍՌՄ-ում պետք է ապահովեն սոցիալիստական արտադրության շահերը, աշխատանքի արտադրողականության աճի շահերը։

Աշխատանքի վարձատրության հիմնական ձևը ՍՍՌՄ-ում, վարձատրման սոցիալիստական սկզբունքին ամենից ավելի համապատասխանող ձևը, հանդիսանում է գործարքային և պրոգրեսիվ գործարքային վարձատրությունը, որը հենվում է գիտականորեն հիմնավորված տեխնիկական նորմավորման վրա։

Տարիֆային ցանցերի, այսինքն՝ տարբեր կարգերի բանվորների աշխատավարձի դրույքների հարաբերությունների կառուցման հիմնական սկզբունքը պետք է լինի բանվորների որակավորման մակարդակի հաշվառումը և յուրաքանչյուր բանվորի՝ որակյալների շարքն անցնելու շահագրգռվածության ստեղծումը։



digitised by A.R.A.R.@

Տարիֆային դրույքների սահմանման հիմնական սկզբունքը պետք է լինի արդյունաբերության տվյալ ճյուղի ժողովրդական տնտեսության մեջ ունեցած նշանակության հաշվառումը, աշխատանքների համեմատական ծանրության հաշվառումը տարբեր ճյուղերում: Աշխատանքի ճիշտ կառուցված վարձատրումը պետք է խթան հանդիսանա արդյունաբերության առաջատար ճյուղերի բանվորների համար: Վարձատրությունը մասնավորապես ծանր ֆիզիկական աշխատանքի ճյուղերում, ինչպես օրինակ—ստորերկրյա աշխատանքներ ածխային արդյունաբերության մեջ, պետք է կառուցվի այնպես, որպեսզի բանվորն ինքը շահագրգռված լինի գնալ հանքում աշխատելու, գիտենալով, որ իր աշխատանքը կվարձատրվի պատշաճ կերպով:

Այս մեծ չափով վերաբերում է աշխատանքի վարձատրման կառուցմանը նաև ձեռնարկության ներսում, որովհետև աշխատանքի կառուցման վարձատրումը պետք է ապահովի արտադրության առաջատար օղակների, բանվորների առաջատար խըմբերի համապատասխան առաջքաշումը:

Ընկեր Ստալինն իր պատմական վեց ցուցումներում մատնանշեց. «Արդյունաբերության յուրաքանչյուր ճյուղում, յուրաքանչյուր ձեռնարկության մեջ, յուրաքանչյուր ցեխում, կան քիչ թե շատ որակյալ բանվորների առաջատար խմբեր, որոնց ամենից առաջ և գլխավորապես հարկավոր է ամրացնել արտադրությանը: Նրանք, բանվորների այդ առաջատար խմբերը, կազմում են արտադրության հիմնական օղակը: Նրանց կարելի է ամրացնել՝ միմիայն նրանց դեպի վեր առաջ քաշելու միջոցով, նրանց աշխատավարձի մակարդակը բարձրացնելու միջոցով, աշխատավարձի այնպիսի կազմակերպման միջոցով, որը պատշաճ կերպով գնահատում է աշխատավորի որակյալ լինելը»:



***

Արդյոք հետևողականորեն կիրառվո՞ւմ է լավ աշխատողներին նյութապես խրախուսելու սկզբունքը, մինչև վերջ ոչնչացվա՞ծ է արդյոք հավասարեցումը, որը կասեցնում է սոցիալիստական արտադրության վերելքը:

«Պրակտիկայում,— ասված է ընկ. Մալենկովի՝ ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսում արված զեկուցման մեջ,— աշխատավարձի բնագավառում այդ ղեկավար սկզբունքը հաճախ խախտվում է»:



digitised by A.R.A.R.@

ինչո՞ւմն են արտահայտվում հավասարեցման և սոցիալիստական սկզբունքի խախտման մնացորդները։

1. Սոցիալիզմի սկզբունքին ամենամեծ չափով համապատասխանող՝ գործարքային աշխատավարձի արմատացումը դեռևս հեռու է բավարար լինելուց։ Այդ՝ տեղ ունի մի շարք ձեռնարկությունների հիմնական և օժանդակ ցեխերում։ Ծանր մեքենաշինության գործարաններում, 1939 թվի նոյեմբերին, անգամ հիմնական ցեխերում, ժամանակավարձ ստացողները կազմում էին բոլոր բանվորների 30%-ը, օժանդակ ցեխերում՝ 51%-ը։ Մոսկվայի մարզի բամբակագործական արդյունաբերության մեջ 1940 թ. նոյեմբերին գործարքով աշխատողների տեսակարար կշիռը հիմնական ցեխերում կազմում էր 75%-ը, իսկ օժանդակ ցեխերում՝ 84%։

Ավելին. վերջին տարիներում մի շարք դեպքերում տեղի է ունեցել գործարքային վարձատրության՝ աշխատավարձի ընդհանուր ֆոնդի մեջ ունեցած մասի զգալի իջեցում. Լենինգրադի Կիրովի անվան գործարանում 1938 թ. 65%-ից մինչև



61%, 1939 թվին Վորոշիլովգրադի գործարանի գծով 61-ից մինչև 49, ՍՍՌՄ Գլավկոժի գործարանների գծով՝ 1938 թ. 72,8%-ից մինչև 65,2%՝ 1941 թվի հունվարին։

Խնդիրն այն է, որ ամենուրեք, ուր այդ հնարավոր է, ամրապնդենք աշխատանքի գործարքային վարձատրությունը, իսկ այնտեղ, ուր այդ տեխնիկապես հնարավոր չէ, կիրառենք խրախուսական վարձատրության ձևը, որը շահագրգռություն է ստեղծում աշխատողի մեջ՝ իր աշխատանքի արդյունքի նկատմամբ։

2. Աշխատավարձի ճիշտ կառուցումը պահանջում է գիտականորեն հիմնավորված տեխնիկական նորմավորման կազմակերպում, տեխնիկական նորմաների մշակում և ամրապնդում, որոնք հիմնվում են մանրամասնորեն մշակված տեխնիկական պրոցեսի վրա, ինչպես և նորմաների կատարումն ապահովող կազմակերպչական միջոցառումների վրա։

Փաստերը ցույց են տալիս, որ մեր ձեռնարկություններում մեծ, հաճախ գերակշռող տեղ են գրավում փորձնա-վիճակագրական ճիշտ տեխնիկական հաշվումներով չհիմնավորված նորմաներ։ Ընդհա-



digitised by A.R.A.R.@

նուր մեքենաշինության ժողկոմատում գործող նորմաների ընդհանուր թվի 62%-ը կազմում են փորձնա-վիճակագրական նորմաները: Այդ տեսակետից հատկապես անբարենպաստ է դրված գործը օժանդակ ցեխերում, որտեղ փորձնա-վիճակագրական նորմաները կազմում են բոլոր գործող նորմաների 80—90%-ը:

Փորձնա-վիճակագրական նորմաները լինելով որպես կանոն զգալիորեն արտոնյալ, արտադրության տեխնիկային թույլ տիրապետող բանվորի արտադրանքին հավասարվելով, թույլ են տալիս ծախսված աշխատանքի քանակին և որակին չհամապատասխանող աշխատավարձ ստանալ:

Ստուգումը ցույց տվեց, որ Կիրովյան գործարանի № 1 ցեխում տեխնիկական նորմաները միջին թվով 142%-ով կատարելու դեպքում փորձնա-վիճակագրական նորմաները կատարվում են 185%-ով:

Այդպիսի օրինակներ կարելի է շատ բերել:

Ընկեր Վոզնեսենսկին ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսում ասաց. «Անարդարությունն ու հավասարեցումը արտադրության մեջ պահպանվել են օժանդակ և հիմնական



արտադրական բանվորների միջև՝ իբրև կանոն, օժանդակ բանվորներն ունեն արտադրանքի ավելի արտոնյալ նորմաներ, իսկ դրանց կատարումը վերահսկման է ենթարկվում անբավարար չափով»[1]:

Միջին մեքենաշինության ժողկոմատի գործարաններում միջին հաշվով նորմաները ըստ օժանդակ ցեխերի և աշխատանքների կատարվում են 150%-ով, Ընդհանուր մեքենաշինության ժողկոմատի գործարանները՝ 162%-ով, Լենինգրադի «Կրասնի մետալիստ» գործարանը՝ 206 %-ով և այլն:

Այսպիսի դրությունը տանում է դեպի հավասարեցում: Ինչպես հայտնեց ընկ. Շվերնիկը ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսին, առանցքակալների № 1 գործարանում, չորրորդ կարգի շաղափողուհին (сверловщица), որն աշխատում է տեխնի-

1) Ն. Ա. Վոզնեսենսկի, 1940 թ. տնտեսական հանրագումարները և ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1941 թ. պլանը— ՀամԿ(բ)Պ համամիութենական 18-րդ կոնֆերանսի նյութերը, էջ 87—88. Պետքաղհրատ, Երևան, 1941 թ.:



digitised by A.R.A.R.@

կական նորմաներով և գերակատարում է այդ նորմաները, ստանում է ամսական 398 ռուբլի, նույն կարգի ողորկիչը, որն աշխատում է փորձնա-վիճակագրական նորմաներով, ստանում է 1154 ռ.: Փորձնա-վիճակագրական նորմաներով աշխատող և այն 231%-ով կատարող երկրորդ կարգի ծրարողն ստանում է 528 ռուբլի, այսինքն՝ մեկ երրորդով ավելի, քան չորրորդ կարգի չաղափողուհին:

Արդեն մի շարք տարիներ է ինչ մեր տնտեսվարները և պրոֆմիութենական աշխատողները դատապարտում են փորձնա-վիճակագրական նորմաները, սակայն գործնականում շատ քիչ փորձնա-վիճակագրական նորմաներ են փոխարինված տեխնիկական նորմաներով: Անհրաժեշտ է յուրաքանչյուր ձեռնարկության մեջ գործնականորեն կոնկրետ աշխատանք կազմակերպել, մշակելու համար այն բոլոր տարրերը, որոնք թույլ են տալիս ամրապնդել տեխնիկական նորմաները փորձնա-վիճակագրական նորմաների փոխարեն:

Ց. Աշխատանքի և աշխատավարձի կազմակերպման թերությունները տանում են դեպի այն, որ «մինչև այժմ մեր ձեռնարկություններում գոյություն ունի բան-



վորների մի ոչ փոքր միջնաշերտ, որոնք չեն կատարում արտադրանքի նորմաները» (Մալենկով):

Նորմաների կատարման միջին «բարենպաստ» տոկոսներն ըստ բանվորների խմբերի, ըստ ցեխերի, գործարանների, քողարկում են նորմաները չկատարող բանվորների բազմաթիվ խմբերին: Ձերժինսկու անվան № 12 հանքում (Դոնբաս) 1940 թվի դեկտեմբերին հորատող մեքենաների մեքենավարները կատարեցին իրենց նորմաները միջին հաշվով 100,7%-ով, մինչդեռ նրանցից 67%-ը չէր կատարել իր նորմաները:

Նավալոոտբոյշչիկները կատարել էին նորմաները միջին հաշվով 103,7%-ով, իսկ նրանցից 55%-ը նորմաները չէին կատարել: Այսպիսին է ահա «բարենպաստ» միջինի իսկական դեմքը:

Ծանր մեքենաշինության ժողկոմատի գործարանների բանվոր— գործարքայինների 16,8%-ը չի կատարել նորմաները, Սև մետալուրգիայի ժողկոմատի գործարանների գծով՝ 20%-ը, Գունավոր մետալուրգիայի գործարանների գծով՝ 22,5%-ը:

Պայքարել պլանների կատարման համար, ապահովել պլանների կատարումը,



digitised by A.R.A.R.@

դա նշանակում է «պլանը կատարել ոչ թե ձեռնարկության մեջ միջին հաշվով, ինչպես եղել է մինչև այժմ, այլ կատարել պլանն ամեն օր յուրաքանչյուր ցեխում, յուրաքանչյուր բրիգադայում, յուրաքանչյուր դազգյահի վրա և յուրաքանչյուր հերթափոխությունում» (ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսի բանաձևից):

Ուրեմն, խնդիրը կայանում է նրանում, որ չհանգստանալով նորմաների միջին տոկոսի կատարումով, հասնել այն բանին, որպեսզի նորմաները կատարվեն յուրաքանչյուր բանվորի կողմից:

4. Շատ նորմաներ իջեցված են, նրանց սահմանման ժամանակ հաճախ կողմնորոշվում են բանվորական ժամանակի զգալի կորուստներով: Ստալինոգորսկուղոլի № 29 հանքում, 1941 թվի հունվարին նավալոոտբոյշչիկների բանվորական օրը խտացվեց 66%-ով, իսկ նորմաները կատարվում էին 121%-ով: Ուրեմն, անհրաժեշտ է այնպես կառուցել նորմաները, որպեսզի նրանք բխեն բանվորական օրվա լիակատար բեռնվածությունից և ոչ թե արձանագրեն բանվորական ժամանակի կորուստները:

Շատ նորմաներ չեն վերանայվում նույ-



նիսկ այն ժամանակ, երբ մտցված է նոր, առաջավոր տեխնիկա, արված են կազմակերպչական լուրջ ձեռնարկումներ: ХТЗ չուգունաձուլման ցեխում օդափոխիչի հոլովակների (ШКИВ) ֆորմովկայի ժամանակ, օպոկայում (ОПОКА) չորս մասի փոխարեն այժմ դրվում է 7 մաս: Դա կտրուկ կերպով բարձրացրել է աշխատանքի արտադրողականությունը, սակայն նորմաները չեն վերանայվել և այժմ կատարվում են 200%-ով: Շատ դեպքերում մեզ նորմաները, որոնք սահմանված են եղել աշխատանքին ընտելանալու ժամանակաընթացքի համար, չեն վերանայվում և այն ժամանակ, երբ ընտելացումը վերջացել է:

Ահա թե ինչու ընկ. Մալենկովի զեկուցման մեջ ընդգծվել է. «Ձեռնարկությունների ղեկավարները, ցեխերի պետերը և վարպետները պարտավոր են իրագործել արտադրանքի նորմաների բարձրացումն առաջավոր տեխնիկայի և կազմակերպչատնտեսական ձեռնարկումների ներդրման համեմատ»:

5. Զգալի պարապուրդները և բանվորական ժամանակի կորուստները հասցնում են այն բանին, որ չնայած աշխատանքի ընթացքում հիմնական մասնագիտության



digitised by A.R.A.R.@

գծով նորման կատարվում է, բայց պարզ-վում է, որ ամսական արտադրանքը պլա-նով նախատեսվածից ցածր է, ամսական նորման և արտադրողականության պլանը չեն կատարվում: 1940 թվին Մոսկվա-յի կոմբինատի գծով նավալոոտբոյշչիկ-ների, հանքափորների, վագոնավարների օգտագործումը տարբեր աշխատանքի վրա, կազմել է ողջ բանվորական օրվա 6%-ը: Ուրեմն, գրաֆիկի և արտադրանքի համա-չափ թողարկման համար մղած պայքարը պարապուրդների և բանվորական օրվա կորուստների լիկվիդացիան, աշխատանքի կազմակերպման բարելավումը, կբարձրաց-նեն նորմաների կատարումը, աշխատանքի արտադրողականությունը:

6. Տեղ-տեղ դեռևս գոյություն ունի զանազան տեսակի անօրինական հավելա-գրումների և լրացուցիչ վճարների ճանա-պարհով աշխատավարձի ուղղակի ինքնա-կամ կերպով ավելացնելու հակապետական պրակտիկան: Այսպես, օրինակ, Ստալինո-ուգոլ տրեստի № 17/17 բիս պապանինցի-ների անվան շախտում տասնապետ Ռոլինը զեկուցագրերով վճարել էր սևագործ բանվորուհի Կոչուրային 1572 կիլոգրամ քսուկ (смазка) տեղափոխելու աշխատան-



քի դիմաց, իսկ իրականում, ինչպես պարզվեց, նա տեղափոխել էր միայն 340 կիլոգրամ: Այդ հանքում, հանքամասի պետ Ցյումբալյուկը վերանորոգող կրե-պիլշչիկների 3 բրիգադներին 26,5 մետր աշխատանքի դիմաց գրանցել էր 101,5 մետրի աշխատանք, որը պետության վրա նստել էր 6606 ռուբլի: Նման պրակտիկա-յի դեմ անհրաժեշտ է ամենադաժան պայ-քար մղել:

7. Աշխատավարձի կազմակերպման բո-լոր նշված թերությունները հանգեցնում են բանվորների տարբեր խմբերի աշխա-տանքի վարձատրության ճիշտ հարաբե-րությունների խախտումներին:

Օրջոնիկիձեուգոլ տրեստում 1941 թ. հունվարին ածխի բեռնակիրները (գետնի երեսի) ամսական ստացան 463 ռ. 50 կ., ավտոգարաժի բանվորները՝ 498 ռ. 40 կ., իսկ հանքափորների ստորերկրյա խմբի մի-ջին աշխատավարձը կազմել է միայն 452 ռ. 70 կ.: Ամենից քիչ, բանից դուրս է գալիս, ստանում են հիմնական ստորեր-կրյա բանվորները: Նավալոոտբոյշչիկնե-րը, որոնք աշխատանքի մակարդակի տե-սակետից պետք է գրավեն երրորդ տեղը, Ստալինոուգոլ տրեստի № 17/17 բիս հան-



digitised by A.R.A.R.@

քում գտնվում են 10-րդ տեղում, Ստալինոգորսկուգոլ տրեստի հանքերում 13-րդ տեղում, Շչեկինուգոլ տրեստի № 7 հանքում՝ 28-րդ տեղում: Հորատող մեքենաների մեքենավարները, որոնք աշխատավարձի մակարդակի տեսակետից պետք է գրավեն երկրորդ տեղը (լեռնային կոմբայնների մեքենավարներից հետո), Տովարկովուգոլ և Օկտյաբրուգոլ տրեստներում գրավում են 7-րդ և 11-րդ տեղերը:

8. «Անարդարությունը գոյություն ունի նաև տնտեսական ղեկավարների և ձեռնարկությունների ինժեներա-տեխնիկական աշխատողների աշխատանքի վարձատրության մեջ: Պլանները կատարող ղեկավարները և պլանները ձախողող վայ-ղեկավարները վարձատրվում են միատեսակ» (Վոզնեսենսկի):

Լավ աշխատողների նյութապես խրախուսելու սկզբունքը, որը կիրառվում է մեր ձեռնարկությունների ղեկավարների և ինժեներա-տեխնիկական աշխատողների աշխատանքի վարձատրության գործում, հանդիսանում է արդյունաբերության և տրանսպորտի աշխատանքի քանակական և որակական ցուցանիշների բարելավման լուրջ պայմանը: Սև մետալուրգիայի և



քարածխային արդյունաբերության գործարանների ղեկավարների և ինժեներա-տեխնիկական աշխատողների պարգևատրումների փորձն արդեն դրական արդյունքներ տվեց:

Խնդիրն այն է, որ աշխատողների այդ կարևորագույն խմբերի վարձատրությունը խթան հանդիսանա ո՛չ միայն քանակական, այլև որակական ցուցանիշների բարելավման գործում: Մինչև հիմա այդպիսի զուգակցումը ամեն տեղ չէ որ ապահովվել է:

Ինչպես հայտնի է, ՀամԿ(բ)Պ ԿԿ փետրվարյան Պլենումը (1941 թ.) հաստատեց ընկեր Մոլոտովի զեկուցման շուրջն ընդունված բանաձևը՝ արդյունաբերության և տրանսպորտի ղեկավար տնտեսական և ինժեներա-տեխնիկական աշխատողներին՝ պետական պլանների կատարման և գերակատարման համար պարգևատրության սիստեմ մտցնելու մասին:



Պայքարը՝ հանուն ըստ քանակի և որակի աշխատանքի վարձատրության սոցիալիստական սկզբունքի, հանուն այդ սկզբունքի բոլոր տեսակի խախտումների արագ և լիակատար վերացման,



digitised by A.R.A.R.@

հսկայական նշանակություն ունի մեր ժողովրդական տնտեսության զարգացման արմատական խնդիրների լուծման համար: Ընկեր Ստալինը սովորեցնում է մեզ, որ եթե ճիշտ կազմակերպենք աշխատանքի վարձատրությունը մեր տնտեսության բոլոր մասերում, որպեսզի այն՝ յուրաքանչյուր աշխատողի մեջ անձնապես նյութական շահագրգռություն առաջացնի իր աշխատանքի արդյունքի նկատմամբ, ապա արտադրողության վերելքը սահմաններ չի ունենա:



# ԻՐԱՔ

## (ՏԵՂԵԿԱՆՔ)

Արաբական Իրաք թագավորությունը գրավում է 371 հազար քառակուսի կիլոմետր տերիտորիա՝ Տիգրիս և Եփրատ գետերի միջին ու ստորին հոսանքի շրջանում: Իրաքի մեջ են մտնում նաև Սիրիական ու Արաբական անապատների որոշ մասերը, ինչպես նաև լեռնային Քուրդստանի մի մասը: Արևելքում Իրաքը սահմանակից է Իրանին, հյուսիսում՝ Թյուրքիային, արևմուտքում՝ Սիրիային և Անդրհորդանանին, հարավ-արևմուտքում ու հարավում Սաուդյան Արաբիային, իսկ այնուհետև՝ Կուվեյթյան էմիրաթին: Իրաքի հարավ-արևելյան սահմանների մի մասը ողողում են Պարսկական ծոցի ջրերը: Թագավորության մայրաքաղաքն է Բաղդադը, որն ունի մոտավորապես 300 հազար բնակիչ:

Երկրի բնակչությունը կազմում է 3.670 հազար մարդ, որից ավելի քան 60 տոկոսն



digitised by A.R.A.R.@

արաբներ են և մոտավորապես 30 տոկոսը քրդեր։ Ամբողջ բնակչության քառորդ մասը քոչվորներ են։ Կրոնական կազմով բնակչությունը բաժանվում է մահմեդականության երկու ճյուղի՝ շիաների— 52 տոկոս և սուննիների — 40 տոկոս, որոնք թշնամի են միմյանց հետ։

Իրաքը գյուղատնտեսական երկիր է։ Գետերի հովիտներում զարգացած է հողագործությունը։ Հողն արհեստական ոռոգման դեպքում տալիս է հսկայական բերք։ Կարևորագույն կուլտուրաներն են՝ ցորենը, բրինձը, կորեկը։ Երկրի հյուսիսային մասում լայնորեն զարգացած է ոչխարաբուծությունը, որի արտադրանքը կազմում է էքսպորտի զգալի մասը։

Իրաքի կարևորագույն բնական հարստությունն է Մոսուլի նավթը, որը մշակվում է անգլիական կապիտալի կողմից։ Ամերիկյան կապիտալ ներդրումներն Իրաքում կազմում են մոտավորապես 11 միլիոն դոլլար։ Նավթը Կիրկուկայից նավթամուղի միջոցով փոխադրվում է Հայֆա (Պաղեստին) և սնունդ է տալիս անգլիական միջերկրածովյան նավատորմին։ Այդ նավթամուղն ունի ճյուղավորում, որը գնում է սիրիական Տրիպոլի նավահանգիստը, բայց Ֆրան-



սիայի կապիտուլյացիայից հետո այդտեղ նավթ չի փոխադրվում։

Իրաքի արտահանության գլխավոր առարկաներն են՝ նավթը, ցորենը, բուրդը, կաշին, մորթին։ Իրաքը ներմուծում է՝ մեքենաներ, տեքստիլ և այլ արդյունաբերական ապրանքներ։ Իրաքի ամբողջ արտաքին առևտրի մոտավորապես մեկ երրորդ մասն իր ձեռքումն է պահում Անգլիան։ Անցյալ տարի ավարտվեց Բաղդադի երկաթուղու վերջին օղակի կառուցումը, որն Իրաքը միացնում է Թյուրքիայի հետ։ Այդ երկաթուղին կապում է երկրի երեք կարևորագույն քաղաքները՝ Մոսուլը, Բաղդադը և Բասրան։ Բացի դրանից կան մատուցուղիների մի քանի ճյուղեր։ Իրաքն ունի ժամանակակից օդանավակայաններ, որոնց վրայով անցնում են հինգ տրանսկոնտինենտալ օդային ուղիներ։ Կարևորագույն օդանավակայանները գտնվում են Կիրկուկայում, Բասրայում, Բաղդադում, Մոսուլում, Ռութբայում և Հաբբանիա լճի մոտ։

Մինչև 1914—18 թվականների առաջին համաշխարհային պատերազմը Իրաքը Թյուրքիայի օտտոմանյան կայսրության մի պրովինցիան էր։ Պատերազմի ժամանակ Իրաքի տերիտորիան գրավվեց անգլիական ու



digitised by A.R.A.R.@

արաբներ են և մոտավորապես 30 տոկոսը քրդեր։ Ամբողջ բնակչության քառորդ մասը քոչվորներ են։ Կրոնական կազմով բնակչությունը բաժանվում է մահմեդականության երկու ճյուղի՝ շիաների — 52 տոկոս և սյուննիների — 40 տոկոս, որոնք թշնամի են միմյանց հետ։

Իրաքը գյուղատնտեսական երկիր է։ Գետերի հովիտներում զարգացած է հողագործությունը։ Հողն արհեստական ոռոգման դեպքում տալիս է հսկայական բերք։ Կարևորագույն կուլտուրաներն են՝ ցորենը, բրինձը, կորեկը։ Երկրի հյուսիսային մասում լայնորեն զարգացած է ոչխարաբուծությունը, որի արտադրանքը կազմում է էքսպորտի զգալի մասը։

Իրաքի կարևորագույն բնական հարստությունն է Մոսուլի նավթը, որը մշակվում է անգլիական կապիտալի կողմից։ Ամերիկյան կապիտալ ներդրումներն Իրաքում կազմում են մոտավորապես 11 միլիոն դոլլար։ Նավթը Կիրկուկայից նավթամուղի միջոցով փոխադրվում է Հայֆա (Պաղեստին) և սնունդ է տալիս անգլիական միջերկրածովյան նավատորմին։ Այդ նավթամուղն ունի ճյուղավորում, որը գնում է սիրիական Տրիպոլի նավահանգիստը, բայց Ֆրան-



սիայի կապիտուլյացիայից հետո այդտեղ նավթ չի փոխադրվում։

Իրաքի արտահանության գլխավոր առարկաներն են՝ նավթը, ցորենը, բուրդը, կաշին, մորթին։ Իրաքը ներմուծում է՝ մեքենաներ, տեքստիլ և այլ արդյունաբերական ապրանքներ։ Իրաքի ամբողջ արտաքին առևտրի մոտավորապես մեկ երրորդ մասն իր ձեռքումն է պահում Անգլիան։ Անցյալ տարի ավարտվեց Բաղդադի երկաթուղու վերջին օղակի կառուցումը, որն Իրաքը միացնում է Թյուրքիայի հետ։ Այդ երկաթուղին կապում է երկրի երեք կարևորագույն քաղաքները՝ Մոսուլը, Բաղդադը և Բասրան։ Բացի դրանից կան մատուցուղիների մի քանի ճյուղեր։ Իրաքն ունի ժամանակակից օդանավակայաններ, որոնց վրայով անցնում են հինգ տրանսկոնտինենտալ օդային ուղիներ։ Կարևորագույն օդանավակայանները գտնվում են Կիրկուկայում, Բասրայում, Բաղդադում, Մոսուլում, Ռութբայում և Հաբբանիա լճի մոտ։

Մինչև 1914—18 թվականների առաջին համաշխարհային պատերազմը Իրաքը Թյուրքիայի օսմանյան կայսրության մի պրովինցիան էր։ Պատերազմի ժամանակ Իրաքի տերիտորիան գրավվեց անգլիական ու



digitised by A.R.A.R.@

հնդկական զորքերի կողմից և 1920 թվականին Անտանտայի տերությունների՝ Սան-Ռեմոյում կայացված որոշմամբ հանձնվեց Անգլիային, իբրև մանդատային երկիր։

1922 թվականին Իրաքում տեղի ունեցած խոշոր հուզումներից հետո Անգլիան դաշնակցային պայմանագիր կնքեց նրա հետ։ Իրաքը ճանաչվեց ձևականորեն անկախ պետություն։ 1930 թվականին կնքվեց նոր պայմանագիր, որն ուներ ռազմական դաշինքի բնույթ։ Անգլիան իրավունք ստացավ որոշ կետերում հինգ տարի ժամանակով պահել իր զորքերը և օգտվել Իրաքի նավահանգիստներից, օդանավակայաններից, երկաթուղիներից ու խճուղիներից, կառուցել օդային բազաներ ու կոմունիկացիաներ, ինչպես նաև ստացավ պատերազմի ժամանակ Իրաքի ամբողջ տերիտորիայում փոխադրական բոլոր միջոցներից օգտվելու իրավունք։

1932 թվականին Ազգերի Լիգայի որոշմամբ չեղյալ հայտարարվեց անգլիական մանդատն Իրաքի տերիտորիայի նկատմամբ, բայց փաստորեն Իրաքը մնաց Անգլիայից լիակատար կախման մեջ։

Իրաքը 1937 թվականի հուլիսի 8-ին Սաադաբադում Թյուրքիայի, Իրանի, Իրաքի



և Աֆղանստանի միջև ստորագրված Սաադաբադյան պակտի մասնակից է։ Պակտի մասնակիցները պարտավորվել էին ձեռնպահ մնալ միմյանց վերաբերմամբ թշնամական գործողություններից և միմյանց հետ կոնսուլտացիա ունենալ պակտը ստորագրած կառավարություններին հետաքրքրող բոլոր հարցերի վերաբերյալ։

Իրաքը ժառանգական պառլամենտական միապետություն է՝ երկպալատային սիստեմով։ Սենատը, որ կազմված է թագավորի կողմից նշանակված 20 անդամից, վերահսկում է դեպուտատների պալատի նկատմամբ։ Դեպուտատների պալատը բաղկացած է 115 մարդուց։ Թագավորն ունի պառլամենտն արձակելու և «պատճառաբանված վետոյի» իրավունք։

---

Ի տ. պատխմբագրի՝
Ն. Ս. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ

digitised by A.R.A.R.@

